45 ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՀԻՒՊԱՏՈՍԱՐԱՆՆԵՐ պիտի բացուին այս գարնան, զանազան երկիրներու մէջ, արեւմտեան Եւրոպայէն մինչեւ Ցունաստան, Թուրքիա, Աւստրալիա եւն. :

ՆՈՐ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԻՒՆ ՄԸ ծագեցաւ Ինդոնեզիոյ մէջ (Նախկին հոլանտական Հնդկաստան)։ Ապստամբները գրաւեցին Մաքասար քաղաքը։ Երրորդ ապստամբութիւնն է այս, երեք ամսուան ընթացքին։ Ձերբակալուեցաւ անպաշտօն նախարար մը, Փոնթիանաքի Սուլթանը, իբրեւ մեղսակից առաջին ապստամբութեան հրամանատարին՝ Թրքածին Վեսթերլինկի :

ՀԱՄԱՑՆԱՎԱՐՆԵՐՈՒ ընդհ. ժողովի Դ. օրուան նիստին մէջ, Ժոլիօ – Քիւռի, Ֆրանսայի հիւլէական հաստատութեան վարիչը, յայտարարեց թէ «յառաջդիմական գիտնականները, համայնավար գիտնականները իրենց գիտութենէն փշուր մը պիտի չտան, պատերազմ մղելու համար Խ. Միութեան դէմ»։ Միեւնոյն ատեն հաւաստեց թէ «խորհրդային գիտնականները չեն վախնար Ջրածին ռումբի «շանթաժ»էն, վասնզի Մ. Նահանգները ապահովաբար աւելի յառաջ անցած չեն այս գետնին վրայ»։

ՊԵԼՃԻՈՅ դահլիճին կազմութիւնը յանձնուեցաւ նախկին վարչապետ Վան Զելանտի, որ պիտի ջանայ կաթոլիկներու կառավարութիւն մը հաստատել։ Եթէ յաջողի, խորհրդարանը նիստ պիտի հրաւիրուի, խնամակալութեան վերջ տալու եւ Թագաւորը վերահաստատելու համար։ Այս վերջինը որոշած է գահէն հրաժարիլ միայն խորհրդարանին որոշումով։ Կը վախցուի որ ծանր խռովութիւններ ծագին երկրին մէջ :

ՍՈՖԻԱՅԷՆ կը հեռագրեն թէ «աղետալի» ձախողանքներ կրած է 1950ի հողագործական ծրագիրը, մասնաւորապէս Սոֆիայի, Սթալինի (Վառնա), Վիտինի եւ ուրիշ բազմաթիւ շրջաններու մէջ։ Փլովտիվի (Ֆիլիպէ) մէջ շրջանային կոմիտէն բացէ ի բաց ընդդիմացած է հողագործութեան արդիացման, համաձայն կառավարական տեղեկագրին եւն. :

ԵՈՒԿՈՍԼԱՒԻՈՅ դիկտատորը, Թիթօ, ճառ մը խօսելով, յայտարարեց թէ Եւրոպայի ապագայ նախայարձակ պետութիւնը պիտի ըլլայ ուր որ տկար կէտ մը գտնէ. հետեւաբար անհրաժեշտ է զօրաւոր ըլլալ, յանկարծակիի չգալու համար»:

ԱՊՐԻԼ 11–24Ը ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Ազգ. Միութեան եւ հոգաբարձութեան, 29 Ապրիլ, շաբաթ երեկոյ ժամը 8·30ին, Salle des Fêtesի մէջ։ Մանրամասնութիւնները տեղին վրայ :

★

ԱՊՐԻԼ 11–24Ը ԼԱ ՍԻՈԹԱՅԻ ՄԷՋ

10 Ապրիլ, Զատկի Մեռելոցի օրը, կէսօրէ վերջ ժամը 3ին Salle de la Mutualité։ Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Հրայր խումբին :

## Ֆ. Հ. Մ. Ը. Մ.ի բաժակի բացառիկ մրցումներ

Զատկին կիրակին ու երկուշաբթին, A. S. Amicaleի գեղեցիկ մարզադաշտին վրայ, «Ե. Պապիկեան»բաժակի մրցումները, մասնակցութեամբ ԼԻՈՆ–ՏԷՍԻՆ Հ. Մ. Ը. Մ.ին (ախոյեան 1949ի բաժակին)։ ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Մ. Ը. Մ.ին (ախոյեան Provence, promotion honneur)։ ՎԻԷՆԻ Հ. Մ. Ը. Մ.ին (ախոյեան Lyonnais, 1ère division)։ ԱԼՖՈՐ – ՎԻԼԻ Ֆ. Հ. Մ. Ը. Մ.ին (Finaliste championnat de Paris)։

Առաջին մրցումները, երկու օրն ալ, կը սկըսին ժամը 2ին։

Հաղորդակցութիւն.— Charenton - Ecolesէն, 181 autobus, իջնել Rouget de l'Isle ճիշդ դաշտին դիմաց։

Տանօթ.— Մարզադաշտը ունի հազար անձի համար գոց tribunes :

★ Ի պատիւ հիւրերուն, երեկոյթ պարահանդէս մը, կիրակի ժամը 9էն սկսեալ, Ալֆորվիլի քաղաքապետարանին շքեղ սրահին մէջ, (Salle Voltaire, rue Voltaire)։ Հաղորդակցութիւն.— Charenton Ecolesէն, autobus 103, իջնել rue Voltaire։

## Նոր Սերունդի Օրը Մարսէյլի մէջ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Շրջ. վարչութեան, հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի եւ մասնակցութեամբ Նոր Սերունդի 12 խումբերու :

Այս կիրակի իրիկուն ժամը 9էն մինչեւ լոյս, Clubի շքեղ սրահներուն մէջ, 51 rue Grignan :

Պիտի խօսին ընկերներ Տ. ԹԱԴՈՑԵԱՆ եւ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ։

Գեղարուեստական ճոխ բաժին :

Լ. ԳԵՂՈՒՆԻԻ ԴԱՄԲԱՐԱՆԸ

ՄԱՐՍԷՅԼ. — 1945ի եղբայրասպանութեան զոհերէն Լեւոն Գեղունիի աճիւնի փոխադրութիւնը եւ դամբարանի բացումը տեղի պիտի ունենայ Ապրիլ 11ին, երկուշաբթի կէսօրէն վերջ ժամը երեքին, Կարտանի գերեզմանատունը։ Այս առթիւ կը հրաւիրուին շրջանի բոլոր ընկերներն ու ընկերուհիները, Կապոյտ Խաչի Մարսէյլի շրջանի մասնաճիւղերը եւ Նոր Սերունդի ընկեր-ընկերուհիները, ինչպէս եւ ողբացեալ ընկերոջ յիշատակը յարգող բարեկամները :

ԽՆՋՈՅՔ – ՀԱՒԿԹԱԽԱՂ ԼԻՈՆԻ ՄԷՋ
ԶԱՏԿԻ ՅԱՐՈՒԹԵԱՆ ՏՕՆԻՆ ԱՌԹԻՒ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէի, այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3էն 11, քաֆէ տը լ'էթուալի վերնայարկը, 1 Cours Gambetta, մուտքը Place Raspailէն։

Գեղարուեստական ճոխ բաժին։ Երգ, արտասանութիւն եւ հայկական պար :

ՍԳԱՀԱՆԴԷՍ ԱՊՐԻԼ 11–24Ի ԱՌԹԻՒ

Կազմակերպուած Կրընոպլի Հ. Ազգ. Եկ. Միութեան կողմէ, կիրակի 16 Ապրիլ կէսօրէ վերջ, ժամը 3ին, Sacré Coeurի սրահին մէջ։ Հրաւիրուած են գաղութին բոլոր կազմակերպութիւնները :

ԶԱՏԿԱԿԱՆ ՏՕՆԵՐԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ
(Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցի)

7. Ապրիլ Աւագ Ուրբաթ Խաչելութիւն եւ Թաղում ժամը 17ին։

8. Ապրիլ Շաբաթ Ճրագալոյց Ս. Զատկի, երեկ. սկիզբ ժամերգ. ժամը 15·30ին Ս. Պատ. ժամը 17ին։

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ.— Տիկին Եպրաքսէ Տէմիրճեան (Էվէրէկցի) կը փնտռէ իր եղբայրը՝ Գրիգոր Տէմիրճեան, եւ մօրաքոյրը՝ Գեղանոյշ Գանձապետեան (վերջինը Ցունաստանէն Ամերիկա մեկնած է)։ Տեղեկացնել Տիկին Տէմիրճեանի, 14bis Ave. Bosquet, Paris (7)։

Կը խնդրուի Ամերիկայի թերթերէն արտատպել :



ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶԵԱՆ շրջանի մարմինները ժողովի կը հրաւիրուին երեքշաբթի, 12 Ապրիլ ժամը 8·30ին, Sociétés Savantes։

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Սիամանթօ» խումբը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր ընկերները այս ուրբաթ երեկոյեան ժամը 9ին, ակումբին սրահը, 78 rue Rabelais։ Խիստ կարեւոր օրակարգ :

ՓԱՐԻԶԱՀԱՅ Լսարանի հերթական հաւաքոյթը այս ուրբաթ ժամը 8·30ին, Café Régent։ Կը խօսի երիտասարդ ճարտարագէտ Լեւոն Ռ. Տէր Մինասեան։ Նիւթը՝ «Ի՞նչ է Թէօքրասի»ն։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Աղբիւր Սերոբ եւ Մկր. Եօթնեղբայրեան խումբի ընդհ. ժողովը՝ այս ուրբաթ իրիկուն ժամը 8·30ին, ծանօթ հաւաքատեղին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ։ Ժողովէն վերջ դասախօսութիւն :

ՀԱՄԱԽԱՐԲԵՐԴՑԻԱԿԱՆ Միութեան Լիոնի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս ուրբաթ իրիկուն, ժամը 8ին, 71 rue de Bonnelի սրահին մէջ։ Կարեւոր օրակարգ։ Ներկայանալ անդամատետրով :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Լիոնի մասնաճիւղը «Նոր Սերունդի Օր»ը կը տօնէ Մայիս վեցին, շաբաթ երեկոյեան։ Մանրամասնութիւնները յաջորդիւ :



Imprimerie DER ACOPIAN, 17 Ru eDamesme – (13)
Le Gérant: A. NERCESSIAN

